Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 20 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։

---

# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Պրոլետարիատի առաջնորդներ Լենինը և Ստալինը մեր պարտիայի ամբողջ պատմության ընթացքում հսկայական ուշադրություն են նվիրել սովետական երիտասարդության կոմունիստական դաստիարակությանը։ Իր հիմնադրման առաջին օրերից բոլշևիկների պարտիան և նրա առաջնորդներ Լենինն ու Ստալինը ձգտել են կազմակերպել և պարտիայի շուրջը միավորել մարտական ռևոլյուցիոն երիտասարդությանը։ Դեռևս ՌՍԴԲՊ երկրորդ համագումարում Վ. Ի. Լենինը առաջարկեց երիտասարդության մասին բանաձևի նախագիծը։ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը «ողջունում է ռևոլյուցիոն ինքնագործունեության աշխուժացումը սովորող երիտասարդության մեջ, առաջարկում է պարտիայի բոլոր կազմակերպություններին՝ ամեն կերպ աջակցել այդ երիտասարդությանը*

կազմակերպվելու նրա ձգտման ասպարե-
զում»։ (Լենին, հատ. 6, էջ 7)։

1905 թվականի ռևոլյուցիայի առաջին օրե-
րից Վ. Ի. Լենինը բանվոր երիտասարդու-
թյանը հաստատակամորեն կոչ էր անում
կազմակերպվելու, նա պարտիայի առջև
խնդիր էր դնում բանվոր երիտասարդու-
թյանը լայնորեն ներգրավել պրոլետարիա-
տի պրակտիկ ռևոլյուցիոն պայքարի մեջ։
Լենինը պահանջում էր երիտասարդությունից
ստեղծել մարտական դրուժինաներ ու ջո-
կատներ և տեղադրել դրանք պատասխանա-
տու պոստերում. «Հարկավոր են երիտա-
սարդ ուժեր,— գրում էր Վ. Ի. Լենինը 1905
թվականի փետրվարին,— Ռուսաստանում
մարդիկ չափազանց շատ կան, հարկավոր
է միայն ավելի լայնորեն ու ավելի համար-
ձակ, ավելի համարձակ ու ավելի լայնորեն,
կրկին անգամ ավելի լայնորեն ու կրկին
անգամ ավելի համարձակ հավաքագրել
երիտասարդությանը, չվախենալով նրանից։
Ժամանակը պատերազմական է։ Երիտա-
սարդությունը կվճռի ամբողջ պայքարի ել-
քը, և՛ ուսանող երիտասարդությունը և՛, ա-
վելի մեծ չափով, բանվոր երիտասարդու-
թյունը»։ (Լենին, հատ. 7, էջ 102)։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռե-



վոլյուցիայի նախօրյակին պարտիայի վեցե-
րորդ համագումարը Լենինի և Ստալինի
շուրթերով արտահայտվեց պրոլետարա-
կան երիտասարդության ինքնուրույն քա-
ղաքական կազմակերպություններ ստեղ-
ծելու օգտին, որոնք աշխատեն բոլշևիկյան
պարտիայի ղեկավարությամբ։ Համագու-
մարի ընդունած բանաձևի մեջ ասված էր,
թե ներկայումս, երբ բանվոր դասակարգի
պայքարը մտնում է սոցիալիզմի համար
մղվող անմիջական պայքարի փուլը, հա-
մագումարը գտնում է, որ բանվոր երիտա-
սարդության դասակարգային սոցիալիստա-
կան կազմակերպությունների ստեղծմանն
օժանդակելը մոմենտի անհրաժեշտ խնդիր-
ներից մեկն է։

Համագումարը պարտիական կազմակեր-
պություններին պարտավորեցրեց ամեն
կերպ աջակցել բանվոր երիտասարդության
կազմակերպությունների ստեղծմանը։ Վե-
ցերորդ համագումարի որոշումները հսկա-
յական դեր խաղացին Լենինյան-Ստալինյան
կոմերիտմիության ստեղծման գործում։
Լենինը և Ստալինը երիտասարդությանը դի-
տում էին որպես ռևոլյուցիոն բանակի բաղ-
կացուցիչ մասը և, բնականաբար, մեծ նը-
շանակություն էին տալիս նրա մասնակ-

ցությանը սոցիալիստական ռևոլյուցիային։ Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, բանվոր երիտասարդության միությունները ակտիվ կերպով մասնակցում էին Հոկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստմանն ու անցկացմանը։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի անմիջական նախապատրաստման օրերին, մշակելով զինված ապստամբության պլանը, Վ. Ի. Լենինը հաստատակամորեն առաջարկում էր. «Ջոկել ամենավճռական տարրերին (մեր «հարվածայիններին» և բանվոր երիտասարդությանը, ինչպես նաև լավագույն նավաստիներին), նրանցից կազմելով ոչ մեծ ջոկատներ, նրանց միջոցով բոլոր զինված կետերը գրավելու համար, և որպեսզի նրանք մասնակցեն ամենուրեք, բոլոր կարևոր գործողություններին»։ (Լենին, հատ. 21, էջ 320)։

Ռուսաստանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո, բանվոր երիտասարդության միությունները, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, ակտիվ պայքարի մեջ մտան սովետական իշխանությունն ամրապնդելու համար, երիտասարդ սովետական պետությունն օտարերկրյա ռազմական ինտեր-



վենցիայից ու ներքին կոնտրռևոլյուցիայից պաշտպանելու համար։

1918 թվականի հոկտեմբերի 29-ին, Մոսկվայում բացվեց բանվորական և գյուղացիական երիտասարդության Համառուսաստանյան առաջին համագումարը, որն էլ հենց սկիզբ դրեց Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդական Միության գոյությանը։ Համագումարի աշխատանքն անցնում էր Վ. Ի. Լենինի իդեական ղեկավարությամբ և ՌԿ(բ)Պ Կենտկոմի անմիջական օգնությամբ։ Կոմերիտմիության առաջին համագումարում Վլադիմիր Իլյիչն ընտրվեց համագումարի պատվավոր նախագահ, և նրա մոտ՝ Կրեմլ ուղարկվեց հատուկ դելեգացիա։ Դելեգացիայի հետ ունեցած զրույցի ժամանակ Վ. Ի. Լենինը մանրամասն հետաքրքրվում էր երիտասարդական կազմակերպության վիճակով, հարցափորձ էր անում Միության կազմի մասին, և մի շարք կարևոր խորհուրդներ տվեց, թե ինչպես պետք է աշխատի երիտասարդությունը, կարգադրեց Կոմերիտմիության աշխատանքի համար անհրաժեշտ միջոցներ բաց թողնել։

Պարտիայի ութերորդ համագումարը, որ տեղի ունեցավ 1919 թվականին, Վ. Ի. Լենինի առաջարկությամբ մի քանիսն ըն-

դունեց, որի մեջ մատնանշվում էր, թե երիտասարդության մեջ կատարվող կոմունիստական աշխատանքը կարող է հաջող ընթանալ միայն ինքնուրույն կազմակերպությունների միջոցով, որոնք գնում են կոմունիզմի դրոշի ներքո, թե գյուղացիական և բանվորական երիտասարդության մեջ կատարվող կոմունիստական, պարտիական աշխատանքը ներկայումս հսկայական նշանակություն է ստանում։ Պարտիան պետք է իր թիկունքում ունենա լավ պատրաստված ռեզերվներ, որոնցից նա կարողանա ստանալ նոր, ռեվոլյուցիոն խանդավառությամբ տոգորված, ազնիվ ու գիտակից աշխատողներ։

Քաղաքացիական պատերազմն ավարտվելու և ժողովրդական տնտեսության վերականգնմանը անցնելու հետևանքով ստեղծված նոր պայմաններում նաև փոխվեց երիտասարդության միության աշխատանքի բովանդակությունը։ Նոր պայմաններում աշխատելու ծրագիր, աշխատանք, որի նպատակը պետք է լիներ երիտասարդությանը ներգրավել սոցիալիստական շինարարության մեջ, կոմերիտմիությանը տվեց Վ. Ի. Լենինը, 1920 թվականին կոմերիտմիության երրորդ համագումարում արտասանած իր



պատմական ճառի մեջ. «Երիտասարդության միության անդամ լինել,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— նշանակում է ողջ աշխատանքը, բոլոր ուժերը նվիրել ընդհանուր գործին։ Ահա՛ այդ է կոմունիստական դաստիարակությունը»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 271, հայ. հրատ.)։

Երիտասարդությանը կոչ անելով սովորել, Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ կոմունիստ կարելի է դառնալ միայն այն ժամանակ, երբ հիշողությունդ կհարստացնես այն բոլոր գիտելիքներով, որ մշակել է մարդկությունը։ «Երիտասարդության միության խնդիրն է,— ասում էր Լենինը,— իր պրակտիկ գործունեությունը կազմակերպել այնպես, որ սովորելով, կազմակերպվելով, համախմբվելով, պայքարելով այդ երիտասարդությունը դաստիարակի իրեն և բոլոր նրանց, ովքեր հանձին նրա տեսնում են առաջնորդի, որպեսզի նա կոմունիստներ դաստիարակի»։

«Անհրաժեշտ է, որ ժամանակակից երիտասարդության դաստիարակության, կրթության և ուսուցման ամբողջ գործը հանդիսանա նրա մեջ կոմունիստական մորալի դաստիարակությունն»։ Խոսելով կոմունիստական բարոյականության մասին, Վ. Ի.

Լենինը մատնանշում էր, որ այդ կոմունիստական բարոյականությունը բխում է դասակարգային պայքարի շահերից և պետք է ծառայի բոլոր աշխատավորների շահերին, որոնք նոր, կոմունիստական հասարակարգ են ստեղծում: Վ. Ի. Լենինն իր ճառի մեջ հատուկ ուժով ընդգծեց, որ անհրաժեշտ է ակտիվ մասնակցություն ունենալ կոմունիզմի կառուցման գործին: «Երիտասարդության կոմունիստական միությունը խնդիր է ստանձնել օգնելու պարտիային կոմունիզմի կառուցման գործում, և օգնելու ամբողջ սերնդին կոմունիստական հասարակակարգի ստեղծման գործում: Կոմունիստական երիտասարդության միությունը, — ասում է Լենինը, — պետք է լինի հարվածային մի խումբ, որը ամեն մի աշխատանքի մեջ ցույց տա իր օգնությունը, հանդես բերի իր ձեռներեցությունը, իր նախաձեռնությունը»: (Լենին, հատ. 30, էջ 409—415):

Վ. Ի. Լենինը երիտասարդությանը հատկապես նախազգուշացնում էր մակերեսային ուսուցումից, կոչ անելով լրջորեն տիրապետել գիտելիքներին: «Եթե ես գիտեմ, որ քիչ բան եմ իմանում, — ասում էր Լենինը, — ես կձգտեմ ավելի շատ բան իմանալ. բայց եթե



մարդ ասի թե ինքը կոմունիստ է, և թե հարկավոր էլ չէ որ ինքը որևէ բան իմանա հաստատուն կերպով, ապա նրանից կոմունիստի նմանող մի որևէ բան դուրս չի գա»: (Լենին, հատ. 30, էջ 407):

Կոմերիտմիության երրորդ համագումարում արտասանած իր նշանավոր ճառի մեջ Վ. Ի. Լենինը նշեց աճող սերնդի կոմունիստական դաստիարակության հիմնական խնդիրները և տվեց Կոմերիտմիության գործունեության ծրագիրը երկար ժամանակաշրջանի համար:

Վ. Ի. Լենինը շարունակ հետաքրքրվում և հոգում էր Կոմերիտմիության մասին: Կոմերիտմիության հինգերորդ համագումարին ուղարկած ողջույնի մեջ, 1922 թվականի հոկտեմբերին, Վ. Ի. Լենինը գրում էր. «Թանկագին բարեկամնե՛ր: Շատ ցավում եմ, որ չեմ կարող անձամբ ողջունել ձեզ: Ցանկանում եմ ամեն տեսակ հաջողություն ձեր հինգերորդ համագումարի աշխատանքին: Համոզված եմ, որ երիտասարդությունը կկարողանա այնքան հաջող զարգանալ, որ համաշխարհային ռևոլյուցիայի հետևյալ մոմենտի հասունացման ժամանակ միանգամայն խնդրի բարձրության վրա կլինի»:

(Լենինը և Ստալինը երիտասարդության մասին», էջ 283)։

Ժողովրդի ոխերիմ թշնամիները՝ տրոցկիստները, օգտվելով Լենինի հիվանդությունից, փորձում էին Կոմերիտմիությունն օգտագործել պարտիայի դեմ իրենց պայքարի համար։ Երիտասարդությանը հակադրելով հին կադրերին և ձգնելով իրենց կողմը նվաճել ուսանող երիտասարդությանը, տրոցկիստները նրան անվանում էին «Պարտիայի ամենահավատարիմ բարոմետր»։ Կոմերիտմիությունը հավատարիմ մնաց պարտիայի լենինյան-ստալինյան քաղաքականությանը և կործանիչ հակահարված հասցրեց տրոցկիստների փորձերին՝ երիտասարդությանն օգտագործելու պարտիայի դեմ ուղղված իրենց պայքարի համար։

1924 թվականի գարնանը պարտիայի Կենտկոմը հատուկ խորհրդակցություն հրավիրեց Կոմերիտմիության աշխատանքի հարցերի վերաբերյալ։ Այդ խորհրդակցությանը հանդես գալով, ընկեր Ստալինը մատնանշեց, որ «Երիտասարդության կոմունիստական միությունը ռեզերվ է, ռեզերվ՝ կազմված բանվորներից և գյուղացիներից, որոնցից պարտիան լրացնում է իր շարքերը։ Բայց նա միաժամանակ և գործիք է, գործիք



պարտիայի ձեռքում, որն իր ազդեցությանն է ենթարկում երիտասարդության մասսաներին»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 296—297)։

Պատասխանելով «Կոմսոմոլսկայա Պրավդա»-յի խմբագրության հարցերին, ընկեր Ստալինը 1925 թվականի հոկտեմբերին հըստակորեն բնորոշեց կոմերիտմիության առջև կանգնած խնդիրները։

Կոմերիտմիության առաջին խնդիրն է՝ երիտասարդության գիտակցության մեջ արմատավորել այն բանը, որ սոցիալիստական շինարարության հաղթանակը մեր երկրում հնարավոր է և անհրաժեշտ։ «Կոմերիտականները,— ասում է ընկեր Ստալինը,— աշխատում են շինարարության բոլոր բնագավառներում՝ արդյունաբերության մեջ, գյուղատնտեսության մեջ, կոոպերացիայում, Սովետներում, կուլտուր-լուսավորական կազմակերպություններում և այլն։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կոմերիտական ակտիվիստ շինարարության բոլոր բնագավառներում կատարած իր աշխատանքը շաղկապի սոցիալիստական հասարակության կառուցման հեռանկարների հետ»։

Երկրորդ խնդիրն է՝ երիտասարդությանը դաստիարակել պրոլետարական ինտերնա-

ցիոնալիզմի ոգով։ «Ինտերնացիոնալիզմը,— մատնանշում է ընկեր Ստալինը,— այն հիմնական գաղափարն է, որը թափանցում է Կոմերիտմիության աշխատանքի մեջ։ Դրանումն է նրա ուժը։ Դրանումն է նրա հզորությունը։ Պետք է, որ ինտերնացիոնալիզմի ոգին միշտ սավառնի Կոմերիտմիության վրա»։

Երրորդ խնդիրն է,—մատնանշում էր ընկեր Ստալինը,— մեր երիտասարդությանը դաստիարակել բոլշևիկյան պարտիայի նկատմամբ անսահման վստահության և սիրո ոգով։ «Կոմերիտմիությունը ձևականորեն ոչ-պարտիական կազմակերպություն է,— ասում էր ընկեր Ստալինը։ — Սակայն դրանով հանդերձ նա կոմունիստական կազմակերպություն է։ Այդ նշանակում է, որ ձևականորեն լինելով բանվորների և գյուղացիների ոչ-պարտիական կազմակերպություն, Կոմերիտմիությունը միևնույն ժամանակ պետք է աշխատի մեր պարտիայի ղեկավարությամբ։ Ապահովել երիտասարդության վստահությունը դեպի մեր պարտիան, ապահովել մեր պարտիայի ղեկավարությունը Կոմերիտմիության մեջ,— այս է խնդիրը։ Կոմերիտականը պետք է հիշի, որ պարտիայի ղեկավարությունն ապահովելը ամենա-



գլխավորը և ամենակարևորն է Կոմերիտմիության ամբողջ աշխատանքում։ Կոմերիտականը պետք է հիշի, որ առանց այդ ղեկավարության Կոմերիտմիությունը չի կարող կատարել իր հիմնական խնդիրը—բանվորա-գյուղացիական երիտասարդության դաստիարակությունը պրոլետարիատի դիկտատուրայի և կոմունիզմի ոգով»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 311—312)։

Իր պատասխանների մեջ ընկեր Ստալինը նաև հատուկ ուշադրություն հրավիրեց կոմերիտական ակտիվի մարքսիստական-լենինյան ուսուցման անհրաժեշտության վրա։ «... ոչ մի տարակույս չկա,— ասում էր ընկեր Ստալինը,— որ առանց զուգակցելու կոմերիտական ակտիվի գործնական աշխատանքը նրա թեորետիկական պատրաստության հետ («լենինիզմի ուսումնասիրումը») հնարավոր չէ քիչ թե շատ իմաստավոր կոմունիստական որևէ աշխատանք կատարել Կոմերիտմիության մեջ»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 315)։

Բնորոշելով երիտասարդության Միության խնդիրներն ու դերը սոցիալիստական հասարակակարգի կառուցման գործում, ընկեր Ստալինը մատնանշեց կոմերիտմիու-

թյան տեղը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում։ Խոսելով կոմերիտմիության, իբրև պարտիայից դեպի աշխատավոր մասսաները տանող շարժաբեր փոկերից մեկի մասին, ընկեր Ստալինը իր «Լենինիզմի հարցերի շուրջը» գրքի մեջ ասում է. «Դա բանվորական և գյուղացիական երիտասարդության մասսայական կազմակերպությունն է, ոչ-պարտիական, բայց պարտիային հարող կազմակերպություն։ Նրա խնդիրն է՝ օգնել պարտիային երիտասարդ սերունդը սոցիալիզմի ոգով դաստիարակելու գործում։ Նա երիտասարդ ռեզերվներ է տալիս պրոլետարիատի մնացած բոլոր մասսայական կազմակերպություններին՝ կառավարման բոլոր ճյուղերի համար։ Երիտասարդության միությունը հատուկ նշանակություն ստացավ պրոլետարիատի դիկտատուրան ամրապնդվելուց հետո, պրոլետարիատի կուլտուրական և դաստիարակչական լայն աշխատանքի ժամանակաշրջանում»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 318)։

1927 թվականի մարտ ամսին ՀամԼԿԵՄ հինգերորդ կոնֆերենցիայում ընկեր Ստալինը երիտասարդությանը կոչ արեց ակտիվ պայքար մղել աշխատանքի արտադրողա-



կանության բարձրացման, ռացիոնալիզացիայի և ինքնարժեքի իջեցման համար։ «Կոմերիտմիությունը մեզանում միշտ կանգնած է եղել մեր մարտիկների առաջին շարքերում։ Ինձ ծանոթ չեն դեպքեր, երբ մեզ մոտ նա հետ մնացած լինի մեր ռևոլյուցիոն կյանքի իրադարձություններից։ Ես չեմ տարակուսում, որ Կոմերիտմիությունն այժմ էլ, իրեն պատշաճ տեղը կգրավի սոցիալիստական ռացիոնալացման կենսագործման հարցում»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 326)։

Լենինը և Ստալինը շարունակ մատնանշել են, որ սովետական երիտասարդության գլխավոր խնդիրն է՝ հաստատակամորեն սովորել, գիտելիքներ կուտակել, իրեն զինել մարքսիզմ-լենինիզմի ռևոլյուցիոն թեորիայով։ Լենինը մատնանշում էր, որ եթե չտիրապետենք ժամանակակից կրթությանը, ապա «կոմունիզմը կմնա միայն իբրև ցանկություն»։ (Լենին, հատ. 25, էջ 389)։

Զարգացնելով Վ. Ի. Լենինի ցուցումները, ընկեր Ստալինը Երիտասարդության Միության առջև խնդիր դրեց ստեղծել գիտության բոլոր ճյուղերի մասնագետների նոր կադրեր։ Կոմերիտմիության ութերորդ համագումարում, 1928 թվականին, արտասանած

իր պատմական ճառի մեջ ընկեր Ստալինն ասաց. «... Կառուցելու համար պետք է գիտենալ, պետք է տիրապետել գիտությանը, իսկ գիտենալու համար պետք է սովորել: Սովորել համառորեն, համբերատար կերպով... Մեր առջևում կանգնած է մի բերդ: Այդ բերդը կոչվում է գիտություն՝ իր գիտելիքների բազմաթիվ ճյուղերով: Այդ բերդը մենք պետք է վերցնենք ինչ գնով էլ լինի: Այդ բերդը պետք է վերցնի երիտասարդությունը, եթե նա ուզում է լինել նոր կյանքի կառուցող, եթե նա ուզում է դառնալ հին գվարդիայի իսկական փոխարինողը... Տիրապետել գիտությանը, կոփել բոլշևիկ-մասնագետների նոր կադրեր գիտելիքների բոլոր ճյուղերում, սովորել, սովորել, սովորել ամենահամառ կերպով — այս է այժմ խնդիրը»: (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 338):

Կոմերիտմիությունը պարտիային և Սովետական պետությանը հսկայական օգնություն ցույց տվեց գյուղատնտեսության կոլեկտիվացման և հնգամյա պլանի հաջող իրականացման համար ծավալված պայքարի ժամանակաշրջանում: Կոմերիտմիության տասնըհինգամյակի օրը, 1933 թվականին, նրան ուղարկած ողջույնի մեջ ընկեր



Ստալինը գրում էր. «Կոմերիտմիության հարվածայիններն ու հարվածայնուհիները իրենց փառքով են պսակել գործարանների, ֆաբրիկաների, հանքահորերի, երկաթուղիների, սովխոզների, կոլխոզների նոր շինարարության ժամանակաշրջանում: Հուսանք, որ Կոմերիտմիության հարվածայինները կցուցաբերեն է՛լ ավելի մեծ խիզախություն և նախաձեռնություն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում նոր տեխնիկայի յուրացման գործում, մեր երկրի պաշտպանունակության ուժեղացման գործում, մեր բանակի, մեր նավատորմի, մեր ավիացիայի ամրապնդման գործում»: (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 350):

Հարվածային կոլխոզնիկների Համամիութենական առաջին համագումարում, 1933 թվականի փետրվարին արտասանած իր ճառի մեջ ընկեր Ստալինը այսպես բնորոշեց կոլխոզային երիտասարդության խնդիրները. «Երիտասարդությունը,— ասաց ընկեր Ստալինը,— մեր ապագան է, մեր հույսն է, ընկերնե՛ր: Երիտասարդությունը պետք է փոխարինի մեզ, ծերերիս: Նա պետք է հաղթական վախճանին հասցնի մեր դրոշը: ... Ճիշտ է, նրան պակասում են գիտելիքները: Բայց գիտելիքները ձեռքբերովի բան

են. այսօր նրանք չկան, վաղը կլինեն։ Ուստի խնդիրն այն է, «որ պետք է սովորել և դարձյալ սովորել լենինիզմը։ Ընկեր կոմերիտականներ ու կոմերիտուհիներ։ Սովորեցեք բոլշևիզմը և առաջ տարեք տատանվողներին։ Ավելի քիչ շաղակրատեցեք, ավելի շատ աշխատեցեք, և ձեր գործը անպայման գլուխ կգա»։ (Լենինը և Ստալինը երիտասարդության մասին, էջ 343)։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին լենինյան-ստալինյան կոմերիտմիությունը, սովետական հայրենասիրության ոգով տոգորված, անօրինակ խիզախություն ու հերոսություն հանդես բերեց, պաշտպանելով մեր Հայրենիքի պատիվն ու արժանապատվությունը։ Գնահատելով պատերազմի ժամանակ ՀամԼԿԵՄ-ի կատարած աշխատանքը, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Կոմերիտմիության 25-րդ տարեդարձի առթիվ իր ողջույնի մեջ 1943 թվականին գրել է. «Հայրենական Մեծ պատերազմում սովետական երիտասարդությունը հանդես բերեց Հայրենիքի հանդեպ իր պարտքի բարձր գիտակցություն և թշնամուն ջախջախելու անխորտակելի կամք։ Նա հանդիսացավ մեր ժողովրդի հերոսական տրադիցիաների, բոլշևիկների պարտիայի մարտական տրադիցիաների արժանավոր կրողը»։ («Պրավդա», 29 հոկտեմբերի, 1943 թ.)։



Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, կոմերիտմիությունը ակտիվ կերպով պայքարում է հետպատերազմյան ստալինյան հնգամյակն իրագործելու համար։

Կոմերիտմիությունն իր բոլոր հաջողությունների համար պարտական է Լենինի-Ստալինի պարտիային, նրա մշտական հոգատարությանը սովետական երիտասարդության դաստիարակման մասին։

Հետևելով լենինյան պատգամներին, սրբությամբ պահպանելով մարտական տրադիցիաները և հավատարմությունը Լենինի-Ստալինի մեծ պարտիային, կոմերիտմիությունը հանդես է բերում ստեղծագործական նախաձեռնություն, սովետական երիտասարդության բոլոր ուժերն ու ամբողջ եռանդը մոբիլիզացնելով մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ խնդիրն իրագործելու համար։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

# ՀԱՄԼԿԵՄ 30-ԱՄՅԱԿԸ

*Այս տարվա հոկտեմբերի 29-ին լրանում է Համամիութենական Կոմունիստական Երիտասարդական Միության պանծալի 30-ամյակը։*

*Կոմերիտմիության ամբողջ մարտական ուղին անխզելիորեն կապված է սոցիալիստական ռևոլյուցիայի պատմության հետ, մեր բոլշևիկների մեծ պարտիայի պատմության հետ։ Երիտասարդության մեջ կատարվող աշխատանքի հարցը մշտապես եղել է բոլշևիկների պարտիայի ուշադրության կենտրոնում, նրա գործունեության հենց առաջին օրերից։ Երիտասարդության ներգրավումը բանվոր դասակարգի ազատագրական պայքարի մեջ, պարտիան դիտում էր որպես երիտասարդության կոմունիստական դաստիարակության անհրաժեշտ պայման։*

*Պարտիան ձգտում էր երիտասարդության շրջանում ոչ միայն տարածել ռևոլյուցիոն*



*գաղափարներ, այլև օգնում էր նրան ստեղծելու ինքնուրույն կազմակերպություն։ Դեռևս 1903 թվականին ՌՍԴԲՊ-ի 2-րդ համագումարում Լենինի առաջարկությամբ բանաձև ընդունվեց սովորող երիտասարդության ռևոլյուցիոն շարժման նկատմամբ ցույց տրվող վերաբերմունքի մասին։*

*Երիտասարդությունը նվաճելու համար բոլշևիկների դեմ պայքարում էր բուրժուազիան, որը գործի էր դրել բոլոր միջոցները՝ գրականությունը, դպրոցը, եկեղեցին, ամբողջ բուրժուական պետական ապարատը։*

*Ռևոլյուցիոն երիտասարդության ինքնուրույն շարժման կատաղի թշնամիներ էին նաև 2-րդ ինտերնացիոնալի օպորտունիստները, ռուսական մենշևիկներն ու էսեռները, որոնք ամեն կերպ ձգտում էին երիտասարդությանը հեռու պահել բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումից։*

*Բոլշևիկների պարտիան, Լենինը և Ստալինը համարձակ կերպով մերկացնում էին երիտասարդության այդ «կեղծ բարեկամներին» և երիտասարդությանը ցույց տալիս նրա ռևոլյուցիոն դաստիարակության ճիշտ ուղին։*

*Վլադիմիր Իլյիչ Լենինը, դեռևս մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան, մշակեց երի-*

տասարդության ինքնուրույն կազմակերպության և նրան պարտիայի կողմից ցույց տըրվող ղեկավարության կարևորագույն կազմակերպական սկզբունքները, որոնք հետագայում դրվեցին կոմերիտմիության հիմքում։

Պրոլետարական երիտասարդության առաջին մասսայական կազմակերպությունները Ռուսաստանում ծնունդ առան 1917 թվականին, Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո։ Բոլշևիկյան պարտիան երիտասարդության մեջ աշխատելու համար ուղարկեց իր նշանավոր գործիչներին։ Պետրոգրադ գործուղվեցին մի խումբ բոլշևիկներ Ն. Կ. Կրուպսկայայի ղեկավարությամբ։ Եկատերինբուրգում երիտասարդական կազմակերպություններ էր ստեղծում Յա. Մ. Սվերդլովը, Անդրկովկասում առաջին երիտասարդական ռևոլյուցիոն կազմակերպությունը ստեղծեց Ա. Ի. Միկոյանը։

Պրոլետարական երիտասարդական շարժման զարգացման գործում բացառիկ մեծ դեր խաղաց մեր պարտիայի 6-րդ համագումարի որոշումը՝ երիտասարդության մասին։

Համագումարի որոշումների հիման վրա ուժեղացավ պարտիական կազմակերպությունների ղեկավարությունը բանվոր երիտասարդության միությունների նկատմամբ,



լայնորեն ծավալվեց երիտասարդական միությունների գործունեությունը քաղաքներում և մարզերում։ Նրանց գործունեությունը ըստացավ ավելի նպատակասլաց բնույթ, երիտասարդական շարժումը բարձրացավ նոր, էլ ավելի բարձր աստիճանի։

Երիտասարդական միությունները համախմբվելով բոլշևիկյան պարտիայի շուրջը, պայքարի դուրս եկան նրա լոզունգների կենսագործման համար և ակտիվ մասնակցություն ունեցան Հոկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստմանն ու անցկացմանը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, մեր երկրում լիակատար պայմաններ ստեղծվեցին երիտասարդական միություններ ստեղծելու և նրանց միասնական կազմակերպության մեջ միավորելու համար։ Բոլշևիկների փառապանծ պարտիան ու նրա մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը վիթխարի պրոպագանդիստական և կազմակերպական աշխատանք կատարեցին, որպեսզի երիտասարդական միությունները քաղաքում և գյուղում միավորվեն, որպեսզի կենտրոնացվի նրանց գաղափարական և կազմակերպական ղեկավարությունը, որովհետև այդ շրջանում երիտասարդական

միությունները դեռևս չունեին ընդհանուր ծրագիր և կանոնադրություն, որը խանգարում էր նրանց աշխատանքի հետագա զարգացմանը։

Քաղաքացիական պատերազմի փոթորկոտ օրերին, երբ սովետական ժողովուրդը հերոսական պայքար էր մղում արտաքին և ներքին թշնամիների դեմ՝ Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճումների պաշտպանության համար, պարտիան և նրա առաջնորդները ձեռնամուխ եղան երիտասարդական միությունները միավորելու և կոմունիստական երիտասարդական միություն ստեղծելու մեծ աշխատանքին։

Պարտիայի ղեկավարությամբ և օգնությամբ 1918 թ. հոկտեմբերի 29-ին Մոսկվայում գումարվեց բանվորական և գյուղացիական երիտասարդական միությունների առաջին Համառուսական համագումարը, որը հիմք դրեց կոմունիստական երիտասարդական միությանը։

Միությունը կոչվեց Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդական Միություն (ՌԿԵՄ)։

Այդպիսով, բոլշևիկների մեծ պարտիայի և նրա առաջնորդներ Լենինի և Ստալինի երկար տարիների կազմակերպական պրոպա-



գանդիստական աշխատանքը տվեց իր հրաշալի պտուղները։ Այդ աշխատանքն ավարտվեց կոմունիստական երիտասարդական միության ստեղծումով, որը հանդիսացել և հանդիսանում է Լենինի-Ստալինի պարտիայի հավատարիմ օգնականը և հուսալի ռեզերվը։

1924 թվականին, Վ. Ի. Լենինի մահվանից կարճ ժամանակ հետո գումարվեց կոմերիտմիության 6-րդ համագումարը։ Միության 630 հազար անդամների անունից համագումարը որոշեց կոմերիտմիությանը տալ Լենինյան անունը։

Կոմերիտմիությունն իր մարտական առաջին քննությունը բռնեց քաղաքացիական պատերազմների տարիներին։ Պարտիայի կոչով կոմերիտմիությունը մոբիլիզացրեց իր բոլոր ուժերը հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության։

Կոմերիտմիությունը նոր ստեղծված Կարմիր Բանակի շարքերը համալրելու համար, կատարեց մի շարք զորահավաքներ։

Կոլչակի, Դենիկինի, Յուդենիչի, Վրանգելի դեմ կռվելու համար գնում էին ամբողջ կոմերիտական կազմակերպություններ։ Կոմերիտմիության մեջ ընդունված երիտասարդները կոմերիտական տոմսի հետ միասին,

ինչպես հիշում է Նիկոլայ Օստրովսկին, ըստանում էին նաև հրացան և 200 հատ փամփուշտ։ Կռիվների ամենադժվարին տեղերում կոմերիտականները ցույց էին տալիս հերոսության և անձնազոհության հրաշալի օրինակներ։

1928 թվականին, Կարմիր Բանակի տասներորդ տարեդարձի օրը, քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում կոմերիտականների մարտական արժանիքները նշանավորելու համար, Սովետական կառավարությունը Լենինյան կոմերիտմիությանը պարգևատրեց Կարմիր Դրոշի շքանշանով։

Ավարտելով քաղաքացիական պատերազմը, սովետական իշխանությունն անցավ երկրի վերականգնման ու սոցիալիստական վերակառուցման գործին։ Մի քանի տարի տևող իմպերիալիստական, այնուհետև քաղաքացիական անընդհատ պատերազմները ծայր աստիճանի քայքայեցին երկիրը։ Բոլշևիկյան պարտիան և սովետական կառավարությունը ժողովրդի բոլոր ուժերը ոտքի հանեցին ռեսպուբլիկայի տնտեսությունն արագ կերպով վերականգնելու համար։ Պարտիայի ու սովետական կառավարության առաջ նոր, դժվարին խնդիրներ ծառացան։ Նոր խնդիրներ լուծելու էր կոչված նաև կոմ-



երիտմիությունը։ Լենինյան կոմերիտմիությունը պատվով կատարեց այդ խնդիրը. հերոսական աշխատանքի չտեսնված օրինակներ ցույց տվեց նա ժողովրդական տնտեսության վերականգնման համար մղվող համառ պայքարում։

Պարտիայի 14-րդ համագումարում (1925 թ. դեկտեմբերին) ընկեր Ստալինը պարտիայի և սովետական ժողովրդի առաջ դրեց երկրի սոցիալիստական ինդուստրացման հոյակապ պլանը։ Երկրի ինդուստրացման կուրսը աշխատանքի նոր պայմաններ էր ստեղծում կոմերիտմիության առաջ, սովետական ողջ երիտասարդության առաջ նոր խնդիրներ էր դնում։ Կոմերիտմիությունը ձեռնամուխ եղավ արտադրողականության բարձրացման, արտադրության ռացիոնալացման և խնայողության ռեժիմ կիրառելու հարցերին։ Նա հանդիսացավ հարվածայնության նախաձեռնողը։ Առաջին հարվածային բրիգադաները ստեղծվեցին 1926 թ. Լենինգրադում, Մոսկվայում, Ուրալում, Դոնբասում, Անդրկովկասում և մեր Միության մյուս քաղաքներում։

ՀամԿ(բ)Պ 15-րդ համագումարից հետո պարտիան ծավալեց հսկայական աշխատանք գյուղում՝ գյուղատնտեսությունը սո-

ցիալիստական ուղիով զարգացնելու համար։ Կոմերիտմիությունն ակտիվ կերպով օգնեց պարտիային կենսագործելու կոլեկտիվացման քաղաքականությունը և վերացնելու կուլակությունը որպես դասակարգ։

Կոմերիտմիության համար բացառիկ նշանակություն ունեցավ Վլադիմիր Իլյիչ Լենինի ճառը Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդական Միության 3-րդ համագումարում 1920 թ. և ընկեր Ստալինի ճառը ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարում, 1928 թվի մայիսին։

ՌԿԵՄ 3-րդ համագումարում Վլադիմիր Իլյիչ Լենինը նշելով կոմերիտմիության խոշորագույն դերը սոցիալիստական հասարակության կառուցման գործում, իմաստուն կերպով գծեց նրա գործունեության մարտական ծրագիրը։

Շարունակելով զարգացնել Լենինի միտքը, ընկեր Ստալինը ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարում արտասանած իր ճառում երիտասարդության առաջ խնդիր դրեց տիրապետել գիտությանը, պատրաստել նոր բոլշևիկ մասնագետներ գիտությունների բոլոր ճյուղերի գծով, սովորել, սովորել ամենահամառ կերպով։



Լենինյան կոմերիտմիությունը ձեռնարկեց գիտությանը տիրապետելու գործը և կարճ ժամանակամիջոցում մեր երկիրն ստացավ բոլշևիկյան պարտիային և սովետական Հայրենիքին անսահմանորեն նվիրված հարյուր հազարավոր երիտասարդ մասնագետներ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։

Խոշոր է եղել կոմերիտմիության դերը մեր երկրում սոցիալիստական մրցությունը ծավալելու գործում։ Հատուկ ուժով սոցմրցումը ծավալվեց շինարարական տեղամասերում, որտեղ հիմնադրվում էին հնգամյակի գիգանտները և որտեղ աշխատում էին կոմերիտմիության ուղեգրերով գործուղված հազարավոր կոմերիտականներ և արտամիութենական երիտասարդներ։

Կոմերիտմիության առաջին մոբիլիզացիան, նորակառույցներում աշխատելու համար, տեղի ունեցավ 1929 թվականին. 7 հազար պատանիներ և աղջիկներ մեկնեցին Ստալինգրադ՝ տրակտորային գործարանում աշխատելու համար։ Այնուհետև Ուրալի և Սիբիրի նորակառույցները գործուղվեցին 66 հազար հոգի, Դոնբասի հանքերը՝ 36 հազար, անտառահատումներին՝ 20 հազար հոգի և այլն։ Ոչ լրիվ տվյալներով նորակա-

ուլյուներում աշխատելու համար ուղարկվեցին ավելի քան 200 հազար հոգի։

Դնեպրոգէսի շինարարության վրա աշխատողների 70 տոկոսը կազմում էր երիտասարդությունը, որն իր հերոսական աշխատանքի համար պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Պարտիայի 16-րդ համագումարում, 1930 թվի հունիսին, ամփոփելով հնգամյակի առաջին արդյունքները, ընկեր Ստալինն ասաց. «Լենինյան կոմերիտմիությունը և նրա ղեկավարած բանվորական երիտասարդությունը սոցիալիստական մրցության և հարվածայնության գործը պսակեցին վճռական հաջողություններով։ Հարկավոր է ընդունել, որ ռևոլյուցիոն երիտասարդությունն այդ գործում բացառիկ դեր խաղաց»։

1931 թվականի հունվարի 21-ին, Լենինի մահվան 7-րդ տարեդարձի օրը, հարվածայնության և սոցիալիստական մրցության գործում ցուցաբերած նախաձեռնության համար, որն ապահովել էր հնգամյա պլանի հաջող կատարումը, ՍՍՌՄ Կենտգործկոմը որոշեց ՀամԼԿԵՄ-ը պարգևատրել Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։

Հաշվի առնելով երիտասարդության ակտիվության աճումը, պարտիայի 18-րդ հա-



մագումարը կոմերիտական կազմակերպություններին ավելի ավելի մեծ իրավունքներ պետական և տնտեսական շինարարության գործում։

Կոմերիտմիությունը համագումարի որոշումները ընդունեց մեծ խանդավառությամբ և որպես պատասխան պարտիայի վստահության, ապահովեց սովետական ողջ երիտասարդության էլ ավելի ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցության մեջ, հանուն 3-րդ հնգամյակի պլանների կատարման և գերակատարման, հանուն սովետական պետության հզորացման։

1941 թ. հունիսի 22-ին հիտլերյան իմպերիալիստական Գերմանիան ուխտադրուժ կերպով հարձակվեց Սովետական Միության վրա։ Մեր ամբողջ երկիրը վերածվեց միասնական լագերի ընդդեմ ոխերիմ թշնամու։ Պարտիան, ընկեր Ստալինը ողջ սովետական ժողովրդին ոտքի հանեցին Հայրենական պատերազմի։ Ամենուրեք սովետական մարդիկ դուրս եկան պաշտպանելու Հայրենիքը։

Հայրենիքի համար այդ դժվարին օրերին պարտիայի առաջին օգնականը ամենուրեք հանդիսացան ՀամԼԿԵՄ անդամները։ Կոմերիտականները և երիտասարդությունը գտնըվում էին այն մարդկանց առաջին շարքերում,

որոնք այդ ահեղ ժամին պատրաստակամություն հայտնեցին Հայրենիքին նվիրելու ոչ միայն իրենց ուժերը, այլև կյանքը։

Պատերազմի առաջին երեք օրվա ընթացքում Մոսկվայում 50 հազար կոմերիտական դիմում էին տվել ռազմական կոմիսարիատներին և կոմերիտական կազմակերպություններին՝ խնդրելով իրենց որպես կամավորներ ուղարկել ռազմաճակատ։ Այդպիսի տասնյակ հազարավոր դիմումներ ստացվել էին ամբողջ երկրում։

Սովետական երիտասարդությունը և նրանց շարքերում գտնվող կոմերիտմիության անդամները պատերազմի ռազմաճակատներում, պարտիզանական դեսանտային զորքերում, տանկերի վրա, ավիացիայի մեջ, ծովում, ամենուրեք հաղթահարելով պատերազմի դաժանությունները, իրենց հերոսությամբ, դեպի Լենինի-Ստալինի պարտիան և սիրելի Հայրենիքն ունեցած անհուն սիրով, փայլուն էջեր գրեցին սովետական հաղթող ժողովրդի և Լենինյան կոմերիտմիության փառապանծ պատմության մեջ։

Սովետական ժողովուրդը երբեք չի մոռանա իր անմկուն զավակներին, որոնք այնքան հերոսությամբ պաշտպանեցին կոմունիզմի հայրենիքի սիրտը հանդիսացող



Մոսկվան, պանծալի Լենինգրադը, Սևաստոպոլը, Ստալինգրադը, սովետական ազատ Հայրենիքի բոլոր քաղաքներն ու գյուղերը։

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի ծանր օրերին ֆաշիստական հորդաների դեմ կռվելիս ամենուրեք տարածվեց քսան տարեկան կոմերիտական-լեյտենանտ, օդաչու Վիկտոր Տալալիխինի սխրագործությունը։ Օդային մարտում ծախսելով բոլոր փամփուշտները, նա խոյահարեց ֆաշիստական «Խեյնկել III» ռմբակոծիչը, ցած գցեց նրան և ինքը պարաշյուտով իջավ ցած։ Այս սխրագործության համար Տալալիխինն արժանացավ Սովետական Միության Հերոսի կոչման։ Միշտ անմահ կմնա 28 գվարդիական պանֆիլովցիների լեգենդար սխրագործությունը, որոնց կյանքի գնով փակվեց գերմանական տանկային զարասյան առաջխաղացումը դեպի Մոսկվա։

Պարտիական կազմակերպության կոչով հարյուր հազար երիտասարդ մոսկվացիներ կառուցում էին պաշտպանական դիրքեր։ Կոմերիտմիության 260 հազար անդամներ մեկնեցին ռազմաճակատ և պարտիզանական ջոկատներ։

Լենինգրադի 10-ը կոմերիտականից 9-ը հրացանը ձեռքերին պաշտպանում էին հա-

խաղաղ քաղաքը, իսկ մնացածները բլինդաժի ծանր պայմաններում հերոսաբար աշխատում էին գերմանական արկերի հարվածների տակ։ Ավելի քան 6000 կոմերիտական զբաղված էր փողոցի և տարֆի մարտակաբարումով։

Սևաստոպոլի 8-ամսյա հերոսական պաշտպանության ժամանակ կոմերիտականները կոմունիստների հետ միասին կյանքի գնով պաշտպանում էին յուրաքանչյուր թիզ այնքան թանկագին սովետական հողը։

Այստեղ, № 11 դզոտի մոտ 6 երիտասարդ նավաստիներ երեք օր շարունակ հետ էին մղում գերմանացիների գրոհները և ոչնչացրին ավելի քան 200 գերմանացի։ Այդ անօրինակ մարտի մասնակիցներից մեկը՝ կոմերիտական Ալեքսեյ Կալյուժնին մահացու վերք ստանալով, հավաքելով վերջին ուժերը գրել է, «Հայրենիք իմ, Ռուսական երկիր, սիրելի ընկեր Ստալին։ Ես, Լենինյան-Ստալինյան Կոմերիտմիության զավակս, նրա սանը, կռվում էի այնպես, ինչպես թելադրում էր ինձ սիրտս, ոչնչացնում էի թշնամիներին, քանի դեռ կրծքումս բաբախում էր սիրտս։ Ես մեռնում եմ, բայց գիտեմ, որ մենք կհաղթենք։ Սևծովայիննե՛ր, պինդ կացեք, ոչնչացրեք ֆաշիստական կատաղի շու-



ներին։ Զինվորի երդումը ես կատարեցի»։

Ստալինգրադի պաշտպանության ամբողջ պատմությունը չգերազանցված սխրագործությունների պատմություն է։ Հերոսությունը դարձել էր առօրյա, մասսայական երևույթ, ստալինգրադցիների կենցաղը։ Պայքար էր գնում Ստալինգրադի հողի յուրաքանչյուր վերշոկի համար։ Այդ մարտերի հարվածային ուժը կոմունիստներն ու կոմերիտականներն էին։

Ստալինգրադի ճակատի մասնակից մի քանի հարյուր կոմերիտականներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման, ավելի քան 7600 կոմերիտական մարտիկ պարգևատրված է Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով, տասնյակ հազարավորներ կրում են «Ստալինգրադի պաշտպանության համար» մեդալը։

Սովետական Բանակին խոշոր օգնություն ցույց տվեցին ժողովրդական վրիժառուները՝ պարտիզանները։ Կոմերիտականներն ու երիտասարդությունը թշնամու թիկունքում կոմունիստների անդուլ ու անվեհեր օգնականներն էին պարտիզանական պատերազմի կազմակերպման և ղեկավարման ասպարեզում։ Թշնամու կողմից ժամանակավորապես գրավված ռեսպուբլիկաներում ու մար-

գերում աշխատում էին կոմերիտմիության ընդհատակյա ղեկավար օրգաններ, որոնք ղեկավարում էին ընդհատակում մնացած կոմերիտականների ամբողջ գործունեությունը։ Միմիայն Ուկրաինայում պատերազմի առաջին շրջանում գերմանացիների օկուպացրած տերիտորիայի վրա գործում էր կոմերիտմիության 213 ընդհատակյա քաղկոմ ու շրջկոմ և 268 կոմերիտական ընդհատակյա կազմակերպություն։

Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Լիզա Չայկինայի, Շուրա Չեկալինի, Կրասնոդոնի «Երիտասարդ գվարդիա»-յի կոմերիտական ընդհատակյա կազմակերպության երիտասարդության հերոսական պայքարը Հայրենիքին մատուցած անձնվեր ծառայության օրինակ է հանդիսանում։

Երիտասարդ պարտիզանների մատուցած ծառայությունները Հայրենիքին, արժանի կերպով գնահատվեց բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության կողմից։ Ավելի քան 50 հազար երիտասարդ պարտիզաններ ու պարտիզանուհիներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով, իսկ 99 հոգի արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը։



Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ տարած հաղթանակը դարբնվում էր ոչ միայն ռազմաճակատում, այլև թիկունքում, ամբողջ երկրում։

Ռազմաճակատ մեկնած հասակավոր բանվորներին փոխարինելու էին գալիս առաջ երբեք արտադրություն չտեսած երիտասարդությունը, դեռահասները, աղջիկներն ու կանայք։ Շատ ձեռնարկություններում այդ նոր կադրերը կազմում էին բանվորների ընդհանուր թվի 60—70 տոկոսը. նոր կադրերին սովորեցնելու դժվարին խնդիրը լուծվում էր ոտքի վրա, զինվորական ձևով։

Հաղթանակի գործում մեծ ավանդ հանդիսացավ կոմերիտմիության նախաձեռնությամբ ծավալված երկհարյուրականների և երիտասարդական ճակատային բրիգադների հայրենասիրական նշանավոր շարժումը, որը համաժողովրդական օժանդակություն և ընդունելություն գտավ։ Սովետական երիտասարդության մեծ հայրենասիրությունն իր պայծառ արտահայտումը գտավ երիտասարդական ճակատային բրիգադներ ստեղծելու մեջ, 1945 թվականի սկզբներին ամբողջ երկրում հաշվվում էր մոտ 154 հազար երիտասարդական բրիգադա, որոնք միավորում էին ավելի քան մեկ միլիոն

մարդ։ Այդ բրիգադաների անդամներից շատերը տիրապետեցին երկու-երեք արհեստների, անցան մի քանի դազգահների սպասարկման։

Մեծ ու պատասխանատու խնդիրներ էին լուծում նաև գյուղական կոմերիտականներն ու երիտասարդությունը։ Պատերազմի առաջին իսկ օրերից ռազմաճակատ մեկնեցին կոլխոզային արտադրության լավագույն կադրերը։ Պատերազմական ժամանակի դժվարությունները գլխավորապես ընկան գյուղական կանանց և երիտասարդության ուսերին։ Երիտասարդությունը եռանդուն պայքարի դուրս եկավ բերքատվության բարձրացման համար։ Այդ նպատակով կոմերիտմիության նախաձեռնությամբ միայն 1944 թվին կազմակերպվեցին 64 հազար երիտասարդական բարձր բերքի օղակներ։ Բարձր բերքի երիտասարդական օղակների մրցությունն օժանդակում էր կոլխոզային հողագործության լավագույն վարպետների փորձի տարածմանը, արթնեցնում էր երիտասարդության ստեղծագործող միտքը, առաջ էր քաշում բարձր բերքի հազարավոր վարպետներ, կոլխոզային աշխատանքի հերոսներ ու հերոսուհիներ։

Կոմերիտական կազմակերպությունները



խոշոր աշխատանք կատարեցին բանակին օգնություն ցույց տալու գործում։ Կազմակերպեցին երիտասարդական կիրակնօրյակներ, որի միջոցով երկրի պաշտպանության ֆոնդը մուծեցին 460 միլիոն ռուբլի։ Հավաքեցին և արդյունաբերությանը հանձնեցին 4 միլիոն տոննա սև և գունավոր մետաղ։ Երիտասարդությունը հավաքեց 270 միլիոն ռուբլի և մուծեց երեխաների օգնության ֆոնդին։

Հիտլերյան Գերմանիայի դեմ Սովետական Միության մղած Հայրենական Մեծ պատերազմի տարիներին ցուցաբերած աչքի ընկնող ծառայությունների և սովետական երիտասարդությանը Հայրենիքի նկատմամբ անսահման նվիրվածության ոգով դաստիարակելու ասպարեզում կատարած մեծ աշխատանքի համար Համամիութենական Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միությունը պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղված Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո, սովետական երկիրը ձեռնարկեց ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման աշխատանքը։ Մեր երկրի զարգացման նոր էտապում կոմերիտմիու-

թյունը զինվեց բոլշևիկյան պարտիայի նոր ցուցումներով՝ օգնելու երիտասարդությանը առաջիկայում նույնպես տիրապետելու գիտությանը և կուլտուրային, երիտասարդությանը դաստիարակելու լենինյան պարտիայի նկատմամբ նվիրվածության ոգով, բարձրացնելու երիտասարդ հայրենասերների բոլոր ուժերը մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման համար։

Կոմերիտմիությունը հսկայական քաղաքական, դաստիարակչական աշխատանք է ծավալել երիտասարդության մեջ, հետպատերազմյան հնգամյա պլանի կատարման գործում նրա ակտիվ մասնակցությունն ապահովելու համար։

Մեր երկրում ծավալված համաժողովրդական մրցության առաջին շարքերում է գտնըվում երիտասարդությունը։ Հնգամյակը 4 տարում կատարելու նշանաբանով է աշխատում ամբողջ երիտասարդությունը։ Աշխատանքի բարձր արտադրողականության հրաշալի օրինակներ են ցույց տալիս երիտասարդական բրիգադները։ Կոմերիտականները հատուկ խնամքով օգնում են Ստալինգրադի, Դոնբասի վերականգնման գործին։

ՀամԼԿԵՄ-ի ուղեգրերով 23 հազար երիտասարդ բանվորներ աշխատում են Ստա-



լինգրադի նորակառույցներում։ Ավելի քան 200 հազար տղաներ և աղջիկներ աշխատում են Դոնբասում՝ գերմանացիների կողմից պայթեցված հանքերը վերականգնելու համար։

Արդյունաբերության մեջ աշխատող երիտասարդներից հետ չեն մնում նաև գյուղական երիտասարդները։ Նրանք անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը, եռանդուն պայքար են ծավալում գյուղատնտեսության նոր վերելքի համար։

Երիտասարդ կոլխոզնիկները ծավալում են մրցություն, ամրացնում են կոլխոզները և ձգտում են բարձր բերքի։ Կոլխոզներում և սովխոզներում աշխատում են հազարավոր բարձր բերքի երիտասարդական օղակներ և տրակտորային բրիգադներ, որոնք օրինակ են ծառայում բոլոր կոլխոզնիկներին։ Բարձր բերք ստանալու համար Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում է շնորհվել 302 կոմերիտականների, 6000 երիտասարդ կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով։

Սովետական իշխանությունն ստեղծել է բոլոր հնարավորությունները պատանի-

ների և երիտասարդության կրթության համար։ Դպրոցներում այժմ սովորում են 33 միլիոն աշակերտներ, բուհերում՝ մոտ 1 միլիոն ուսանող, տեխնիկումներում սովորողների թիվը հասնում է մեկ միլիոն 97 հազարի։

ՀամԼԿԵՄ 30-ամյակը խոշոր հաջողություններով է դիմավորում ՀամԼԿԵՄ ջոկատներից մեկը հանդիսացող Հայաստանի Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միությունը։

Ռեսպուբլիկայի կոմերիտմիությունը Հայաստանի բոլշևիկների պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի անմիջական ղեկավարությամբ անցել է փայլուն ճանապարհ և ամենուրեք պատվով է կատարել այն խնդիրները, որ նրա առաջ դրվել է պարտիայի և ընկեր Ստալինի կողմից։

Հայաստանի կոմերիտմիությունն իր փոքրաթիվ քանակից աճել և այժմ նրա շարքերում հաշվվում է ավելի քան 110 հազար հոգի։

Պարտիայի կողմից երիտասարդության շրջանում կատարած աշխատանքի արդյունքը հատուկ ուժով երևան եկավ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Հայաստանի Լենինյան Կոմերիտմիության



տասնյակ հազար անդամներ, այդ թըվում մոտ 4500 աղջիկներ, մեկնեցին Բանակ և հերոսաբար մարտնչեցին նրա շարքերում։

Պատերազմի տարիներին Հայաստանի կոմերիտականներն ու երիտասարդները քաղաքում և գյուղում հերոսական աշխատանք կատարեցին ռազմաճակատը հանդերձանքով, բանակը և ժողովուրդը պարենով, արդյունաբերությունը՝ հումքով ապահովելու համար։ Կոմերիտականները, երիտասարդները ու պիոներ-դպրոցականները իրենց միջոցներով երկու տանկային շարասյուն, մեկ ավիա էսկադրիլիա նվիրեցին Սովետական Բանակին։

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո, ռեսպուբլիկայի կոմերիտականները ձեռնամուխ են եղել հետպատերազմյան հնգամյա պլանի իրագործմանը և պայքարում են այն չորս տարում կատարելու համար։ Արդյունաբերության մեջ ծավալվել է սոցիալիստական մրցությունը։ Հազարավոր կոմերիտականներ իրենց պանծալի տարեդարձը դիմավորում են պլանների գերակատարումով։ Կոմերիտմիությունը վերցրել է խոշորագույն շինարարություններից մեկի՝ Գյումուշգէսի շեֆությունը, որտեղ կոմերիտմիության ուղեգրերով արդեն

աշխատում են մոտ 700 հոգի։ Կոլխոզներում և սովխոզներում ստեղծվել են ավելի քան 2000 բարձր բերքի երիտասարդական օղակներ։ Բարձր բերքի երիտասարդական օղակների օղակավարներից 8 հոգի արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման, իսկ 125 հոգի պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով։

Հնգամյակի համար մղվող պայքարում կոմերիտմիության հիմնական խնդիրն է ջանասեր և համառ աշխատանք կատարել երիտասարդական մասսաների գիտակցության բարձրացման համար, ապահովել նրանց հետագա դաստիարակությունը հայրենասիրության ոգով, աշխատանքի, պետության, սոցիալիստական հասարակության հանդեպ իրենց պարտականությունները կատարելու նրկատմամբ։

ՀամԼԿԵՄ Կենտկոմի վերջերս կայացած 17-րդ պլենումի որոշմամբ 1949 թվի փետրվարին հրավիրվում է ՀամԼԿԵՄ 11-րդ հերթական համագումարը։ Կոմերիտական հայրենասիրական մեծ գործերով, արտադրական բարձր ցուցանիշներով պետք է դիմավորել ՀամԼԿԵՄ 11-րդ համագումարը։

ՀամԼԿԵՄ-ը իր պանծալի հոբելյանը դի-



մավորում է էլ ավելի կուռ համախմբված բոլշևիկների պարտիայի շուրջը, երիտասարդության հարազատ հայր մեծ Ստալինի շուրջը։

Իր աճման ու զարգացման համար, իր վիթխարի հաջողությունների համար, Լենինյան կոմերիտմիությունը պարտական է բոլշևիկների մեծ պարտիային և նրա հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինին։

Պարտիան, ընկեր Ստալինը հայրական հոգատարությամբ աճեցրին ու զարգացրին կոմերիտմիությունը։ Պարտիայի ղեկավարության և օգնության շնորհիվ կոմերիտմիությունը դարձել է կոմունիստական հասարակակարգի հասարակական հզոր ուժերից մեկը և վճռական տեղ է գրավում ժողովրդի ու նրա երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության սիստեմում։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությունը եղել է և մնում է որպես Լենինյան Կոմունիստական Երիտասարդական Միության ուժի և հզորության մեծագույն աղբյուրը։

Թևակոխելով իր գոյության 31 տարին, կոմերիտմիությունը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ կհասնի էլ ավելի խոշոր հաջողությունների։

Գ. ԱԼԵՔՅԱՆ

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ԹՎԵՐ

*Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացումը 1948 թվի անցած երեք եռամսյակների ընթացքում տեղի է ունեցել ժողովրդական տնտեսության տարեկան պլանի առաջադրանքները կատարելու և գերակատարելու նշանաբանով։ Համաժողովրդական սոցիալիստական մրցության հիման վրա սովետական ժողովուրդը, Լենինի-Ստալինի մեծ պարտիայի ղեկավարությամբ, նորանոր հաջողություններ է ձեռք բերել հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար մղվող պայքարում։ Երրորդ եռամսյակի արդյունքները Սովետական Միության աշխատավորները դիմավորեցին օրինական հպարտությամբ։ Սակայն սովետական մարդիկ երբեք չեն բավարարվել և այժմ էլ չեն բավարարվում ձեռք բերածով։ Նվաճված հաջողությունները նրանց ձեռքին հիմք կծառայեն նորանոր վիթխարի խնդիրների լուծման համար, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։ Ագիտատորների խնդիրն է այդ նվաճումները դարձնել աշխատավորական լայն մասսաների սեփականությունը, բոլշևիկյան կենդանի խոսքով և անձնական օրինակով քաջալերել և առաջ մղել աշխատավորներին ընկեր Ստալինին տված խոստումը կատարելու համար։*



***

*1948 թվի երրորդ եռամսյակի պլանը ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի գծով կատարված է 107 տոկոսով, իսկ ընթացիկ տարվա պլանով 9 ամիսների համար սահմանված առաջադրանքը գերակատարված է 6 տոկոսով։*

*1948 թվի 9 ամիսների ընթացքում արդյունաբերության համախառն արտադրանքը նախապատերազմյան 1940 թվի միջին մակարդակից անցել է 14 տոկոսով, այդ թվում սեպտեմբեր ամսին՝ 26 տոկոսով։*

* * *

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվի երրորդ եռամսյակի պլանը կատարվել է 106,6 տոկոսով։ Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվի ինն ամսվա պլանը կատարվել է 103,5 տոկոսով։ Համեմատած անցյալ տարվա համապատասխան շրջանի հետ, աճել է 20,2 տոկոսով։

1948 թվի ինն ամսվա ընթացքում Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը նախապատերազմյան 1940 թվի համապատասխան շրջանի ծավալից գերազանցել է 55,1 տոկոսով, այդ թվում սեպտեմբերին 57,9 տոկոսով։

* * *

Համախառն արտադրանքը 1948 թվի 3-րդ եռամսյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության մեջ, 1947 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ աճել է 23 տոկոսով և պլանից դուրս թողարկվել է զգալի քանակությամբ արդյունաբերական արտադրանք։

Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման 1948 թվի 3-րդ եռամս-



յակի համար սահմանված պլանը գերակատարված է, որի հետևանքով ինքնարժեքի իջեցումից արտապլանային ընդհանուր խնայողությունը այս տարվա 9 ամիսների ընթացքում կազմում է ավելի քան 4 միլիարդ ռուբլի։

* * *

Հայկական ՍՍՌ ամբողջ արդյունաբերության մեջ 1948 թվի երրորդ եռամսյակում համախառն արտադրանքը, համեմատած 1947 թվի երրորդ եռամսյակի հետ, աճել է 22,7 տոկոսով։

* * *

Պատմական հաջողություններով նշանավորվեց 1948 թիվը գյուղատնտեսության ասպարեզում։ Միայն այս մեկ տարում ՍՍՌՄ ցանքատարածությունները ավելացել են 13,3 միլիոն հեկտարով։

1948 թվին հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը հասավ նախապատերազմյան 1940 թվի մակարդակին, իսկ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հեկտարից՝ անցավ նախապատերազմյան մակարդակից։

* * *

Անասունների գլխաքանակը ՍՍՌՄ կոլխոզներում 1948 թվի սեպտեմբերի 1-ին,

1947 թվի սեպտեմբերի 1-ի համեմատությամբ, ավելացել է խոշոր եղջերավոր անասունների գծով 22 տոկոսով, խոզերինը՝ 71 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 15 տոկոսով, ձիերինը՝ 11 տոկոսով։

Ավելացել է նաև կոլխոզնիկների անհատական օգտագործման անասունների գլխաքանակը։

***

Գյուղատնտեսության ընդհանուր վերելքի մեջ իր արժանի տեղն է գրավում Հայաստանի կոլխոզային գյուղատնտեսությունը։ Ընդարձակվել է գյուղատնտեսության կուլտուրաների և մասնավորապես բամբակի, ծխախոտի և շաքարի ճակնդեղի ցանքատարածությունը։ Հաջողությամբ է կատարվում բերքահավաքը, աշնանացան կուլտուրաների ցանքը և ցրտահերկը։ Այս տարի մինչև հոկտեմբերի 1-ը կատարվել է 42,300 հեկտար ավելի տրակտորային աշխատանք, քան անցյալ տարի մինչև հոկտեմբերի 1-ը։

Մինչև 1948 թվի հոկտեմբերի 1-ը կոլխոզներում անասունների գլխաքանակը ավելացել է, համեմատած 1947 թվի հոկտեմբերի 1-ի հետ, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 7,1 տոկոսով, խոզերինը՝ 11,7 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 8,8 տո-



կոսով և ձիերինը՝ 7,3 տոկոսով։

***

ՍՍՌՄ երկաթուղիներում օրական միջին բեռնումը 1948 թվի 3-րդ եռամսյակում, 1947 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ կազմում է 115 տոկոս։ Գետային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1948 թվի 3-րդ եռամսյակում, 1947 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 27 տոկոսով, իսկ եռամսյակային պլանը կատարվել է 107 տոկոսով։

Ընթացիկ տարվա 9 ամիսների ընթացքում բոլոր կապիտալ աշխատանքների ծավալը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ ամբողջությամբ վերցրած, 1947 թվի 9 ամիսների համեմատությամբ, կազմում է 126 տոկոս, Հայկական ՍՍՌ 114,6 տոկոս։

***

Հացահատիկի արտադրության խիստ ավելացումը, անասնապահության վիճակի բարելավումը և արդյունաբերական ապրանքների, այդ թվում լայն սպառման առարկաների աճը անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի համար, որն իր արտահայտությունը գտավ սովետական առևտրի հետագա ծավալման մեջ։

ՍՍՌՄ-ում հացի վաճառքը 1948 թվի 3-րդ եռամսյակում, 1947 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է 56 տոկոսով, ձկնեղենինը՝ 20 տոկոսով, շաքարինը՝ 92 տոկոսով, հրուշակեղենինը՝ 41 տոկոսով, մետաքսեղեն գործվածքներինը՝ 24 տոկոսով, կաշվե-կոշկեղենինը՝ 28 տոկոսով և ռետինե կոշիկինը՝ երկու անգամ։ Կոոպերատիվ շուկայի գները քաղաքներում 1948 թվի 3-րդ եռամսյակում, նույն թվի 2-րդ եռամսյակի գների մակարդակի համեմատությամբ, իջել է 13 տոկոսով, կոլխոզային շուկայի գները նույն ժամանակամիջոցում իջել են 24 տոկոսով։

***

Հայկական ՍՍՌ-ում հացի վաճառքը 1948 թվի 3-րդ եռամսյակում, համեմատած 1947 թվի 3-րդ եռամսյակի հետ, ավելացել է 128,8 տոկոսով, շաքարի վաճառքը՝ 103,8 տոկոսով, հրուշակեղենինը՝ 63,5 տոկոսով, բամբակեղեն գործվածքինը՝ 4,6 անգամ, բրդեղեն գործվածքինը՝ 5,4 անգամ, կաշվի-կոշկեղենինը՝ 156,8 տոկոսով և ռետինի կոշկեղենինը՝ չորս անգամ։

Կոոպերատիվ շուկայի գները ռեսպուբլիկայի քաղաքներում 1948 թվի 3-րդ եռամսյակում, համեմատած 1948 թվի երկրորդ ե-



ռամսյակի հետ իջել են 16,5 տոկոսով, կոլխոզային շուկայի գները նույն ժամանակամիջոցում իջել են 35,5 տոկոսով։

***

1948 թվի 3-րդ եռամսյակում բանվորների և ծառայողների ընդհանուր թիվը ՍՍՌՄ-ում ժողովրդական տնտեսության մեջ, 1947 թվի 3-րդ եռամսյակի համեմատությամբ, ավելացել է երկու միլիոն 400 հազար մարդով, բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 11 տոկոսով, աշխատավարձի ֆոնդը ժողովրդական տնտեսության մեջ ավելացել է 9 տոկոսով։

***

Ընթացիկ տարում ՍՍՌՄ բարձրագույն ուսումնական հաստատությունների առաջին կուրսերում ընդունված է 188 հազար մարդ, 16 տոկոսով ավելի քան 1940 թվին։ Այդ թվում Հայկական ՍՍՌ 2,541 մարդ կամ 59 տոկոսով ավելի, քան նախապատերազմյան 1940 թվին։ Տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների I կուրսերում ընդունվել են 360 հազար մարդ— 9 տոկոսով ավելի, քան 1940 թվին, այդ թվում Հայկական ՍՍՌ 3.704 մարդ կամ 21 տոկոսով ավելի քան 1940 թվին։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՆԱՎՈՐ ԽՈՍՔԸ

*Քաղաքական աշխատանքի ամենամասսայական ձևը դա բանավոր ագիտացիան է, որը վստահված է պարտիական ու անպարտիական առաջավոր մարդկանց, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին, որոնք մասսաների առաջ պետք է խոսեն պատասխանատվության ամենաբարձր զգացումով։*

*Ագիտատորի ճշմարտացի խոսքի միջոցով պարտիայի ու կառավարության որոշումները հասնում են ամեն մի աշխատավորի։*

*«... Ամեն մի ագիտատոր դա սովետական իշխանության լիազոր ներկայացուցիչն է», — ասել է Վ. Ի. Լենինը իր մի ճառում 1921 թվականին։ Այս բնորոշումը մեծ ու պատասխանատու խնդիր է դնում մեր ագիտատորների առաջ։*

*Ագիտատորները իրենց ագիտացիա անելու վարպետությունն ու արվեստը պետք է սովորեն Վ. Ի. Լենինից և Ի. Վ. Ստալինից. մեծ առաջնորդներից պետք է սովորել բարդ քաղաքական խնդիրները շարադրելու պարզ և մատչելի եղանակը, պահպանելով խնդիր-*



*ների լուսաբանման բարձր գաղափարականությունը և նպատակասլացությունը։*

*Ընկեր Ստալինի ագիտացիոն աշխատանքի փորձը մեծ ուղեցույց է ամեն մի ագիտատորի համար։ Նրա ալամաբանական անհաղթահարելի ուժը, շարադրման մատչելի եղանակն ու կապակցությունը, հանգիստ, հակիրճ, հստակ ու համոզիչ խոսելու եղանակը պետք է յուրացվի ամեն մի ագիտատորի կողմից։ Ագիտացիոն աշխատանքի մեծ վարպետ Մ. Ի. Կալինինի ճառերն ու ելույթները աչքի էին ընկնում իրենց պարզությամբ և ժողովրդականությամբ։ Կալինինը չէր խրատում իր ունկնդիրներին, այլ կարծես խորհրդակցում էր նրանց հետ, նա հաճախ հարցեր էր դնում ունկնդիրների առաջ և իր մտքերը արտահայտում սրտագին խոսակցությունների տոնով։*

*Ագիտատոր լինելը պատասխանատու և պատվավոր պարտականություն է. ում վրա դրված է այդ պարտականությունը նա պետք է գիտակցի թե ինչպիսի բարձր վստահություն է տածում նրան բոլշևիկյան պարտիան։ Որպեսզի կարողանա արդարացնել պարտիայի այդ մեծ վստահությունը ագիտատորը պետք է տիրապետի մարքսիստական-լենինյան թեորիայի հիմունքներին,*

բարձրացնի իր քաղաքական-գաղափարական ու կուլտուրական մակարդակը, կարողանա կողմնորոշվել, ճիշտ անալիզի ենթարկել և արժեքավորել ընթացիկ իրադարձությունները։ Ագիտատորը միշտ պետք է հիշի, որ ագիտացիան մեծ արվեստ է, ինչպես ամեն մի արվեստ, այնպես էլ ագիտացիան պահանջում է հմտություն, վարպետություն և լուրջ աշխատանք իր վրա։ Լավ ագիտատոր դառնալու համար հարկավոր է «... կարգին սովորել և փորձ կուտակել»,— ասել է Վ. Ի. Լենինը։

Բոլշևիկյան ագիտացիայի ուժը նրա ազդեցիկ լինելու մեջ է։ Հարկավոր է այնպիսի ագիտացիա, որը կոնկրետ արդյունքներ է տալիս և պրակտիկ գործի է վերածվում։ Մեծ Լենինի խոսքը հասնում էր ամեն մի աշխատավորի, որովհետև նա խոսում էր հասարակ, հասկանալի լեզվով, աշխատավոր մարդու զգացմունքներին մոտ լեզվով։ Ագիտատորը պետք է կարողանա ճիշտ բանավոր խոսքի միջոցով արմատավորել լայն մասսաների մեջ այն կարևորն ու ճշմարտացին, որը քաղաքական հսկայական ակտիվություն է առաջացնում աշխատավորության մեջ։ Այս տեսակետից լավագույն ագիտատորի օրինակ է հանդիսանում Ալավեր-



դու Պղնձաձուլարանի ագիտատոր ընկ. Ա. Կիրակոսյանը, որը 12 տարի անընդհատ ագիտացիոն աշխատանք է տանում ձուլող ցեխում։ Ընկեր Ա. Կիրակոսյանը լավ է գիտակցում իրեն հանձնարարված գործի մեծությունը։ Նա գիտե, որ լավագույն ագիտատոր լինելու համար, հարկավոր է նախ և առաջ արտադրության մեջ լինել առաջավոր և անձնական օրինակով ոգևորել բանվորներին։ Ուստի և պատահական չէ, որ 18 տարի անընդհատ աշխատելով ձուլող ցեխում, նա միշտ էլ ցույց է տվել աշխատանքի լավագույն օրինակներ և գերակատարել է իր արտադրական պլանները։ Ընկ. Ա. Կիրակոսյանն իր ցեխում, ուր աշխատում են մի շարք ձուլող վարպետներ, տանում է ամենօրյա ագիտացիա, անձամբ գլխավորում է սոցմրցման գործը, բանվորներին պարզաբանում է նրանց հետաքրքրող բոլոր հարցերը։ Իր պարզ ու հասկանալի ագիտացիոն աշխատանքով նա աշխատանքային հսկայական խանդավառություն է առաջացրել ձուլող ցեխում, որի հետևանքով այդ ցեխն իր պլանների կատարման տեսակետից գործարանում գրավում է առաջին տեղը։ Ընկ. Ա. Կիրակոսյանը անընդհատ հոգ է տանում իր քաղաքական

ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար, ստեղծել է հարուստ գրադարան, ընթերցում է քաղաքական ու գեղարվեստական գրականություն, հաճախում է կինո, թատրոն։ Գործարանում նրան բոլորը ճանաչում են որպես ազնիվ ու պարտաճանաչ աշխատողի։

Ագիտատորի կենդանի խոսքի արժեքը ամենից առաջ այն է, որ նա սովետական մարդկանց մեջ զարգացնում է սեր դեպի աշխատանքը, հարգանք դեպի աշխատանքային կարգապահությունը, նվիրվածություն դեպի սոցիալիստական Հայրենիքը։ Նրա խոսքը պետք է անխզելիորեն կապված լինի ժողովրդի խնդիրների հետ, նա պետք է իր անձնական փորձով ու աշխատանքով դաստիարակի մնացածներին։ Ագիտատորը պետք է կարողանա համոզել ու ապացուցել, կարողանա հուզել իր ունկնդիրներին, զինել նրանց վառ զգացմունքներով, բոլշևիկյան կրքոտությամբ, պայքարի ու հաղթանակի կամքով։

Այս տեսակետից գնահատելի գործ է կատարում Նոյեմբերյանի շրջանի Դոստլու գյուղի «Հաղթանակ» կոլխոզի № 2 դաշտավարական բրիգադայի ագիտատոր, դպրոցի ուսուցիչ ընկ. Ա. Գրիգորյանը, որը ունի ա-



գիտացիոն աշխատանքի 10 տարվա փորձ։ Նրան ամրացված բրիգադայի անդամները առանց բացառության օրվա առաջադրանքը կատարում են 150 տոկոսով, բոլորն ունեն սոցմրցման պայմանագրեր։ Ինքը, Գրիգորյանը ամառվա երեք ամիսներին աշխատելով դաշտում, վաստակել է 70 աշխօր։ Ընկ. Գրիգորյանի ագիտացիան պարզ է, հասարակ, համոզեցուցիչ՝ կյանքից վերցրած հարուստ օրինակներով։ Իր մատչելի զրույցներով, նա կոլխոզնիկների մեջ սեր է առաջացնում դեպի աշխատանքը, ուժեղացնում աշխատանքային կարգապահության զգացմունքը, բարձրացնում աշխատանքային խանդավառությունը։

Ագիտատորի կենդանի խոսքը պետք է կազմված լինի երեք մասից՝ ներածություն, շարադրություն և եզրափակում. Հաջող ներածությունից է կախված ունկնդիրների ուշադրության կենտրոնացումը, ամբողջ հաջողությունը կախված է նրանից թե ինչպես է սկսում ագիտատորը իր զրույցը։ Շարադրությունը պետք է ձևակերպել հստակ, մտքերը հագեցնելով դիպուկ, կյանքից վերցրած փաստերով։ Եզրափակումը նույնպես վճռական նշանակություն ունի. զրույցի ան-

հաջող ամփոփումը փոխում է ամբողջ ելույթի տպավորությունը:

Ագիտատորը պետք է կարողանա պարզ ու հասարակ, սեղմ բառերով արտահայտել ընդարձակ միտք: Որքան հարուստ է ագիտատորի միտքը այնքան հնչուն է նրա խոսքը: Շատ կարևոր նշանակություն ունի ագիտատորի խոսակցական ոճը: Գեղեցիկ ոճը ագիտատորի խոսքը դարձնում է գունեղ, պատկերավոր, վառ և արտահայտիչ: Դրա համար անհրաժեշտ է խնամքով նախապատրաստվել յուրաքանչյուր զրույցին, կազմել նյութի պլանը, ընտրել հետաքրքիր օրինակներ կյանքից:

Ամեն մի ագիտատոր պետք է լավ յուրացնի պարտիայի և կառավարության պահանջը և իր ամբողջ մտավոր ունակությունները գործի դնի աշխատավորության գաղափարական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործին:

Հ. ԱԶԻԶԲԵԿՅԱՆ



## ՄԻՆՉԵՎ ՎԵՐՋ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

(Ագիտատոր ընկ. Մ. Սերոբյանի զրույցը)

Սպիտակի շրջանի Համամլու գյուղի կոլխոզը առաջինն է շրջանում ստացել էլեկտրական լուսավորություն: Կենսագործելով ՀԿ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումի որոշումը «Հայկական ՍՍՌ կոլխոզների էլեկտրիֆիկացիայի պլանի մասին», կոլխոզնիկները որոշել են առաջիկա տարիներում լիովին էլեկտրիֆիկացիայի ենթարկել կոլխոզային արտադրության հիմնական պրոցեսները:

Ստորև տպագրում ենք դաշտավարական № 10 բրիգադայում ագիտատոր ընկ. Մամիկոն Սերոբյանի «Մինչև վերջ կենսագործենք ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշումը կոլխոզների էլեկտրիֆիկացման մասին» թեմայով զրույցի համառոտ շարադրությունը:

—Սովետական իշխանության 31 տարիների ընթացքում,— ասում է ագիտատորը,— արմատապես փոխվել է մեր երկրի գյուղի դեմքը։ Շնորհիվ կոլխոզային կարգերի հաղթանակի աննախընթաց վերելք ապրեց գյուղատնտեսությունը։ Մանր - անհատական տնտեսությունների փոխարեն՝ իրենց արտադրության հետամնաց, նախնադարյան տեխնիկայով, ստեղծվել է աշխարհում ամենախոշոր, ժամանակակից տեխնիկայով հագեցված սոցիալիստական գյուղատնտեսություն։ Այդ ամենը ստեղծեցին լիակատար պայմաններ աշխատավոր գյուղացիությանը մեկընդմիշտ ազատագրվելու կարիքից, քայքայումից և կանգնելու ունևոր ու կուլտուրական կյանքի ուղու վրա։

Սովետական իշխանության հենց առաջին տարիներին, բոլշևիկների պարտիան, Լենինը և Ստալինը մեծ ուշադրություն նվիրեցին մեր արդյունաբերության և գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման աշխատանքներին, այն համարելով որպես սոցիալիզմի նյութական-տեխնիկական հիմքը։ Կենսագործելով մեծ Լենինի պատգամները Սովետական Միության, այդ թվում Հայաստանի աշխատավորները գյուղատնտեսու-



թյան մեքենայացման խոշոր աշխատանքների հետ միասին, լայնորեն ծավալեցին կոլխոզային գյուղի էլեկտրիֆիկացիան։ Մինչռևոլյուցիոն Հայաստանում մենք չունեինք ոչ միայն էլեկտրիֆիկացված որևէ գյուղ, այլև Երևան և Լենինական քաղաքներում էլեկտրականությունը հանդիսանում էր արտակարգ մի շքեղություն։

Այնինչ արդեն 1948 թվի սկզբներին Հայաստանում էլեկտրիֆիկացվել էր 303 կոլխոզ, Իլյիչի լամպեր են վառվում կոլխոզնիկների 46.650 տներում, էլեկտրիֆիկացված են մոտ 300 դպրոց, 270 գյուղական ակումբ, 38 ՄՏ կայան և մեքենա-տրակտորային արհեստանոցներ, 14 սովխոզ։

—ՀԿ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումը,— շարունակում է ագիտատորը,— տվեց Հայաստանի կոլխոզների համատարած էլեկտրիֆիկացման պլանը։ Այդ պլանի համաձայն արդեն ստալինյան հնգամյակի վերջին տարում՝ 1950 թվին լրիվին ավարտվելու է ռեսպուբլիկայի կոլխոզների էլեկտրիֆիկացումը։ Դա կօգնի կոլխոզներում բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ապահովելու գյուղատնտեսության նոր հզոր վերելքը և լայնորեն ծավալելու կուլտուրական աշխատանքը գյուղում։

*Այս ագիտատորը պատմում է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու, քաղաքի ու գյուղի միջև եղած տարբերության վերացման մասին և այդ գործում գյուղի էլեկտրիֆիկացիայի դերը։ Նա նշում է, որ գյուղի համատարած էլեկտրիֆիկացումը կհարստացնի գյուղը նոր, բարդ տեխնիկայով, բազմազան մեխանիզմներով ու սարքավորումներով, անհրաժեշտ կդարձնի գյուղում ստեղծելու նոր, բարձրորակ, ինդուստրիալ տիպի կադրեր։*

Ղուկաս Խոզիբարյան *(կոլխոզնիկ),— Ամեն ինչ հնարավոր է։ Հին ժամանակ մենք միայն ձեռքի ճրագն ու արորը գիտեինք։ Արդեն վաղուց մեր գյուղում ամեն տեղ էլեկտրական լամպն է վառվում, ունենք տրակտոր, կոմբայն, կալսիչ, գութան և ուրիշ գործիքներ, բայց էլի տեսնում ենք, որ դա քիչ է։ Ժամանակն է էլեկտրական մեքենաներով վար ու ցանքս անել։*

Մ. Սերոբյան,— *Այո հնարավոր է։ Կարելի է մեզ մոտ էլեկտրիֆիկացնել սերմի զտման, տեսակավորման, չորացման, կալսման, անասունների կերի պատրաստման, անասնապահական ֆերմաների ջրամատակարարման աշխատանքները։ Կարելի է էլեկտրիֆիկացնել դարբնոցը, կատարել*



*ոչխարների խուզման, կովերի կթման, կարտոֆիլի չորացման աշխատանքները։*

Մ. Մինասյան *(բրիգադիր),— Այդ ամենը անպայման կանենք, բայց ինչո՞ւ մինչ այժմս կոլխոզի վարչությունը չի մտածում լծկան անասունների գոմերում էլեկտրական լուսավորություն անցկացնելու մասին։*

Մ. Սերոբյան,— *Դեռևս անցյալ տարի կովաբուծական ֆերմայի գոմում ծնած կովերի համար ջուր տաքացնելու վրա մենք ծախսում էինք մեծ քանակությամբ վառելիք, շռայլում աշխօրեր և ծխով լցնում ամբողջ գոմը։ Իսկ այժմ ջուրը տաքացնում ենք էլեկտրական էներգիայի միջոցով։ Այս տարի հացահատիկի կալսման աշխատանքները կատարեցինք ոչ թե տրակտորի, այլ էլեկտրական մոտորի ուժով, որի հետևանքով ոչ մի խափանում տեղի չունեցավ, մեծ չափով արագացավ կալսումը և մոտավոր հաշիվներով խնայեցինք մոտ 60 ցենտներ հացահատիկ։*

Պ. Գյոզալյան *(կոլխոզնիկ)։—Մի քանի օր է, որ աշխատում է մեր էլեկտրական սղոցարանը, բայց մեծ գործ է կատարված։ Միայն երկու օրում սղոցված տախտակով մենք վերանորոգեցինք մեր դաշտավարական բոլոր բրիգադաների սայլ[illegible]միս 10*

Գինը 50 կոպ.

խորանարդ մետր փայտը սղոցելու համար մենք վճարեցինք 4000 ռուբլի, այժմ այն նստեց մեզ վրա միայն 300 ռուբլի։ Պետք է մտածել արագ կերպով էլեկտրիֆիկացնել նաև մեր ղարբնոցը։

Ն. Խոյեցյան (կոլխոզնիկուհի),— Ինձ թըվում է, որ պետք է մտածել ունենալ մեր էլեկտրաղացը։ Ունենք 4 ջրաղաց, ջրաղացպանների մի ամբողջ խումբ։ Սակայն ձըմեռվա մեծ մասը, երբ ջուրը սառչում է, ջրաղացները չեն աշխատում և ստիպված ենք աղալու համար հացահատիկը տանել մինչև Կիրովական կամ Ղշլաղ։

Մ. Սեռոբյան.— Դուք ճիշտ եք։ Ընկերներ, ձեր բոլոր առաջարկությունների մասին իրազեկ կպահեմ կոլխոզի վարչությանը և պարտկազմակերպությանը։

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 04485 Պատվեր № 715 Տիրաժ 9.200
Ստորագրված է տպագրության 24/X 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора